պաՀովութեան Խորհուրդը ։

Իսրայէլի արտաքին գործերու նախարարը յայտարարեց .— «Եգիպտոսի կողմէ կատարուած քնդումի եւ զրգռութեան ձեռնարկները այլեւս չեն կրնար անպատիժ մնալ։ Եգիպտոս բացէ ի բաց զրգռութեան ձեռնարկած ըլլալով եւ սպառնալով Իսրայէլի ապահովութեան, մեզի կը մնար ամէն գնով ապահովել մեր պաշտպանութիւնը »։

Այս ազդարարութենէն ետքն էր որ Իսրայէլի զինեալ ուժերը արշաւեցին Խան Եունիսի զինուորական կայանին վրայ ։

Իսրայէլի վարչապետը արտակարգ նիստի հրաւիրեց դահլիճը, լսելու համար ազգ. պաշտպանութեան նախարարին զեկուցումը կացութեան մասին։ Երէկ ուրիշ ժողով մը գումարուեցաւ, սպայակոյտին հետ ։

Հակառակ այս վտանգաւոր երեւոյթներուն, չի կարծուիր որ դէպքերը պատերազմի մը յանգին։ Անգլիա, Ֆրանսա եւ Մ. Նահանգները ուժգնօրէն պիտի միջամտեն, այդ վտանգը փարատելու համար։ Միւս կողմէ, ամերիկեան աղբիւրէ կը հաւաստեն թէ « արաբական երկիրները պատրաստ չեն պատերազմ յայտարարելու» ։

## ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ՀԻՒՍ. ԱՖՐԻԿԷԻ ՄԷՋ

### ՆՈՐ ԴԺՈՒԱՐՈՒԹԻՒՆՆԵ՞Ր ԾԱԳԱԾ ԵՆ

Տեղական թերթերը կը գրեն թէ նոր տարակարծութիւններ ծագած են այն հինգ նախարարներուն միջեւ որոնք մասնակցած էին Էքս լէ Պէնի խորհրդակցութեանց։ Նոր մարզպանը, զօր. տը Լաթուռ Փարիզ պիտի գար երէկ, մանրամասն հրահանգներ ստանալու համար ։ Միեւնոյն ատեն բանակցութիւնները կը շարունակուին Ֆրանսայի եւ Մարոքի միջեւ։ Ամէն դժուարութիւն հարթուած չէ տակաւին։ Այն պատուիրակութիւնը որ Մադակասքար պիտի երթար աքսորական Սուլթանին հետ խորհրդակցելու համար, յետաձգեց իր մեկնումը։ Միւս կողմէ Մարոքի անկախութեան կուսակցները կը մերժեն որ հարիւրամեայ մեծ եպարքոսը եւ իր որդին մասնակցին արքունի խորհուրդին ։

Նոր մարզպանը Սուլթան Արաֆայի այցելեց առջի օր, նախապատրաստելու համար անոր հրաժարումը։ Կարծողներ կան թէ պիտի համակերպի։ Ուրիշներ կը վախնան որ մերժէ։ Փափուկ խնդիր մըն ալ այս։ Առաջին տեսակցութեան ընթացքին, երբ մարզպանը բարօրութիւն կը մաղթէր, Սուլթանը հազիւ քանի մը բառ մրմնջեց, թարգմանի միջոցաւ ։

× Սեպտեմբեր 1ին Սուրիոյ մէջ ալ ցոյցեր կատարուեցան, ի նպաստ Մարոքի անկախութեան։ Սուրիոյ Կարմիր Մահիկը կոչ մը ուղղեց քոյր կազմակերպութեանց, միասնաբար օգնելու համար Մարոքցիներուն։

× Փաքիստանի վարչապետը յայտարարեց Սահմանադիր ժողովին առջեւ թէ կառավարութիւն պիտի ընծայէ Մարոքի եւ Ալժերիոյ ժողովուրդներուն, իրենց ազգային իղձերը իրականացնելու համար ։

× Ֆրանսայի Համայնավար կուսակցութեան Քաղաքական Բիւրօն կոչ մը ուղղեց ընկերվարական կուսակցութեան, որպէսզի միացեալ ճակատ կազմեն, «ընդդիմանալու համար նոր զօրքի առաքման դէպի Հիւս. Ափրիկէ եւ դադրեցնելու համար զաղղական գործողութիւնները, նոր զօրակոչը եւ իրական բանակցութիւններ կատարուին Ալժերիոյ եւ Մարոքի իրաւասու ներկայացուցիչներուն հետ»։

× Պաշտօնի Ֆրանսական զեսպանը Իրաքի կառավարութեան դիմելով, դիտել տուաւ թէ Կարմիր Մահիկի յանձնախումբ մը ղրկել Մարոք՝ կը նշանակէ միջամտել Հիւս. Ափրիկէի գործերուն ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐԸ ԵՒ ՃԱՓՈՆ սկըզբունքով համաձայնեցան, փութացնելու համար Ճափոնի վերազինումը։ Ամերիկեան զինուորները աստիճանաբար ետ պիտի կանչուին եւ նոր դաշնագիր մը պիտի կնքուի, ջնջելով զանազան սահմանափակումներ ։

ՈՒԺԳԻՆ ՊԱՅԹՈՒՆ ՄԸ ասրսեց Վիէննայի Կրանտ Օթէլը, որ ունի300 սենեակներ եւ ուր կը բնակէին Խ. Միութեան պաշտօնեաները եւ սպաները։ Տասներկու հրշէջ խումբեր օգնութեան հասան, բոցերը մարելու համար։ Եօթը աւստրիացի հրշէջներ վիրաւորուեցան ,12 խորհրդային սպաներ, մեծ մասով կիներ եւ մանուկներ, թունաւորուեցան ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Հայկանուշ Բաղդասարեան եւ զաւակը՝ Վահագն-Ժաքօ կը ծանուցանեն թէ այս կիրակի յետ պատարագի հոգեհանգիստ պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցին, իրենց ամուսնոյն եւ հօր՝

### ԳՆԴ, ՏԻԳՐԱՆ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալ ընկերոջ յիշատակը յարգողները։



### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՆՇԱՆ ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻՆ
### ՄԱՐՍԷՅԼ ԵՒ ՇՐՋԱՆՆԵՐԸ
### ԻԵ. ՑԱՆԿ

*Պուլվար Օտտօ*

| | |
|---|---|
| Նախորդ գումար | 1.122.000 |
| Պ. Ոսկիան Քէնտիրեան | 1.000 |
| Պ. Աստուր Աղայեան | 1.000 |
| Պ. Վահան Յակոբեան | 1.000 |
| Տէր եւ Տիկին Վերօ Եազօճեան | 1.000 |
| Պ. Հրանդ Սարաֆեան | 1.000 |
| Պ. Աբգար Մինասեան | 500 |
| Պ. Կիրակոս Սարգիսեան | 500 |
| Պ. Յար. Ղարիպեան | 200 |
| Այրի Տիկին Էլմաս Գէորգեան | 200 |
| Պ. Ասլան Թօմպուլեան | 300 |
| Պ. Մովսէս Զարիֆեան | 300 |
| Պ. Կ. Մարիքեան | 200 |
| Պ. Ս. Մինասեան | 100 |
| Պ. Յ. Մինասեան | 100 |
| Պ. Յ. Մարիքեան | 100 |
| Պ. Ա. Դաւիթեան | 200 |
| Պ. Մ. Աբրահամեան | 200 |
| Պ. Ա. Տիլսիզեան | 100 |
| Ընդհ. գումար | 1.130.000 |

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Դըրչէհիրցի Տիկին Հայկանոյշ Պալըգճըօղլու, կը փնտռէ իր երկու եղբայրները՝ Տիգրան եւ Կարապետ Պալըգճըօղլուները, որոնք Ֆրանսա ըլլալ կը կարծուին։ Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի լուր տալ, Պ. Աղամին, սափրիչ, 60, Մօնթէ Կրանտ Քօթ, Լիոն, Ֆրանս ։

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլորի ներկայութիւնը պարտաւորիչ ։

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴԻ ՍԷՆԹ ԱՆԹուանի մասնաճիւղի ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին, հայրենակից Նաճարեանի ագարակը։ Զեկուցում պատգամաւորական ժողովի եւ ընտրութիւն նոր վարչութեան ։



*Imp. Araxes Rue Richer, Paris (9e)*

